
Ընկեր եւ ընկերուհի Ս. Պալաեաններ տարեդարձի կարկանդակին մոմերը մարելէ առաջ


Ձախէն աջ.— Զ. Պալաեան, Յակոբ Շահնուր, Պարոյր Թալալեան, Խորէն Իսկէնեան, Յակոբ Ոսկանեան (հայրենի խմբավար), Մօ. Եդուարդ Յակոբեան եւ Ս. Պալաեան

# ՈՂՋԵՐԹԻ ԵՐԵԿՈՅ

(Շարունակութիւն Ա. էջէն)

Նախ քան կարկանդակը կտրուիլը՝ եգիպտահայ ծանօթ երգահան և ժողովրդային բանաստեղծ Արամ Մուրատեան կարդաց ինքնագիր արաբերէն ոտանաւոր մը, որ մեծապէս գնահատուեցաւ ներկաներուն կողմէ:

Արդէն կէս գիշերը անցած էր երբ ներկաները հետզհետէ սկսան հրաժեշտ առնել՝ բարի ճանապարհի սրտաբուխ բարեմաղթութիւններ ուղղելով հայրենիք մեկնող երջանիկ զոյգին:

Այս ուրախ առթիւ, վերջին պահուն ստացուեցաւ Պր. Կարօ Վարժապետեանի ողջերթ մաղթող հեռագիրը։

## ԱՐՁԱՆԱԳՐՈՒԹԻՒՆ ՔՈՒՊՊԷԻ ՊԱԼԱՏԻ ՏՈՄԱՐԻՆ ՄԷՋ

Նախ քան մեկնումին՝ Ընկեր և Ընկերուհի Ս. Պալաեաններ (ընկց. թերթիս խորհրդական Մոհտ. Ֆաթհի Ապտէլ Ռահիմի) Քուպպէի նախագահական պալատը գացին և տոմարին մէջ արձանագրեցին Ա.Մ.Հ.ի կառավարութեան ուղղուած շնորհակալական և երախտագիտական տողեր: Ցաջորդ օրը այս այցելութեան արձագանք հանդիսացան եգիպտական պաշտօնական օրաթերթերը:

## ՄԵԿՆՈՒՄ

Ուրբաթ, 18 Նոյեմբեր, վաղ առաւօտեան ժամը 3.30ին, թերթիս արտօնատիրուհիին և պատասխանատու խմբագրին ողջերթ մաղթելու համար, Գահիրէի միջազգային օդանաւակայանը փութացած էին ազգականներ, բարեկամներ և «Ջահակիր»ի ընտանիքը։

Ներկայ էին նաև Սովետ դեսպանատան փոխ-հիւպատոս Ընկ. Պարոյր Թալալեան և Ազգային երեսփոխան Պր. Ստեփան Լաչինեան։

Ժամը ճիշդ 5.00ին «Իւնայթըտ Արապ Էըլայնզ»ի գոմէթ տիպի օդանաւը ճամբայ ելաւ դէպի Մոսկուա։


Ձախէն աջ.— Ստեփան Լաչինեան, Պարոյր Թալալեան, Հրազդան Պալեան, Հայկ Օհաննէսեան, Վահան Ջէչճէնեան եւ Արամ Մովսէսեան


Ձախէն աջ.— Սիմոն Սամսոնեան, Վահան Պէնսեան, Զ. Պալաեան, Արմէն Տատուր, Յակոբ Ոսկանեան (հայրենի խմբավար) եւ Մօ. Եդուարդ Յակոբեան։

## ԲԺՇԿՈՒԹԻՒՆԸ ՄՈՒԹ ԽԱՒԵՐՈՒՆ ՄԷՋ

Ժողովուրդին մութ խաւերուն մէջ կանոնաւոր բժշկութեան գործադրութիւնը վերջին աստիճան ծանծրացուցիչ է:Բժիշկը լայնածաւալ սրտի և անեզր համբերութեան տէր պէտք է ըլլայ բժշկութիւն ի գործ դնելու համար այս խաւերուն պատկանող ընտանիքներուն մէջ: Խօսք առնել, խօսք հասկցնել ասանկ մարդոց՝ ո՞ր աստիճան դժուար է, երբեմն դառն նախատինքներու և անմարսելի քննադատութեանց ենթակայ։ Աղքատութիւն, տգիտութիւն, նախապաշարում, ինքնահաւանութիւն, խօսք չհասկնալ, ամէն գլխէ ձայն լսել, խենթ ու խելառ դիտողութիւններ կը պաշարեն բժիշկը:

Բժիշկը կը մտնէ աղքատիկ սենեակ մը, ուր կը գտնուի հիւանդը, տասէ աւելի դրացի կիներ և երկու երեք տղաք։

— Բարեւ ձեզ։

— Հրամմեցէք, խըյանէթ, շատ ուշացար։

— Գլուխս քերելու ժամանակ չունիմ, հարիւր հիւանդէ խապար եկած է, ո՞ր մէկուն հասնիմ, չեմ գիտեր։

— Աստուած կարողութիւն տայ, մէնչուր հէքիմ ըլլալդ Սաթենիկ հանըմէն իմացանք տէ խապար ըրինք:

— Քանի՞ օրէ ի վեր հիւանդ է չոճուխը: Սա լեզուդ նայիմ. ձեռքդ ինծի տուր։

— Երեք օր կայ, նասը՞լ ըսեմ, վրան կոտրածութիւն մը կայ, քիթը կախ է, տիվալ կը պանէր կոր, «քա՛ աղջիկ, մի պանիր, նալէթ փարային» ըսի։

( Շար. տես էջ 6 )

## ՄԱՐՕ ՄԱՐԳԱՐԵԱՆԻ ԵՐԳԸ

(Շար. Գ. էջէն)

Այո՛, սա էլ է թելադրանք, բայց հեղինակն այստեղ արդէն բանաստեղծութիւնն ու հրապարակախօսութիւնը իրարից անջատող սահմանագիծն է կանգնել։ Եւ այն տեղ, որտեղ Մարգարեանը կարողանում է իր ասելիքի համար ձեւ գտնել, նրա խօսքը հեռու է միօրինակութեան վտանգից, իսկ այնտեղ, ուր խօսքը ոչ թէ գեղարուեստական հնարանքով, այլ հրապարակախօսական ճակատայնութեամբ է ասուած, հրապարակ է գալիս նաև միօրինակութիւնը:

Ինձ խենթացնում է մարդկային
հոգու
Ոլոր մոլորը...
Ո՞ւր ես բարձրանում առած ինձ
քեզ,
Որպէս դրօշակ...
Ես քեզ՝
Ամէնից խոր խորամանկին
Ու հաւատարիմ ամէնից խարդախ
Ես համարեցի ամէնից արդար...

Տարբեր բանաստեղծութիւնների սկզբի տողեր են սրանք, և բոլորի մէջ գրեթէ նոյն բովանդակութիւնն է, ասուած նոյն ձեւով՝ ճակատով։ Կարելի է նման ուրիշ օրինակներ էլ բերել, որոնք ցոյց տալով հանդերձ, որ մարդկային ազնուութեան, ճշմարտութեան, բարոյական մաքրութեան խնդիրները խռովում ու մինչեւ հոգու խորքը յուզում են նրան, բայց միաժամանակ ցոյց են տալիս, որ երբ ձեւերի բազմազանութիւնն է բացառուած, միօրինակութիւնն է գալիս հրապարակ և մանրացնում ասելիքը:

Եւ իմ կարծիքով, Մարօ Մարգարեանի այս գրքի հիմնական թերութիւնը հէնց այդ է: Այդ է, որ երբեմն երբեմն գալիս ու միօրինակութեան երանգներ է տալիս այն լաւ երգին, որ բանաստեղծուհու հոգու խորքերից, յաճախ շատ խորքերից է հնչում, ջերմ է, անկեղծ, մարդկայնօրէն ազնիւ և հէնց այդ պատճառով էլ, թէեւ միայն իրենն է՝ Մարօ Մարգարեանինը, միաժամանակ մերն է նաև։

ՎԱՀԱԳՆ ԴԱՒԹԵԱՆ

## «ՋԱՀԱԿԻՐ» ՄԱՐԶ.- ԵՐԻՏ.Ի ՆՈՅԵՄԲԵՐԻ ԹԻՒԸ

«Ջահակիր» Մարզական-Երիտասարդական Ամսօրեայ յաւելուածի նոյեմբերի թիւը լոյս կը տեսնէ Շաբաթ, Նոյ. 26ին։ Փնտռել ցրուիչներէն։

## ԱՐՏԱՍԱՀՄԱՆԻ ԲԱԺԱՆՈՐԴՆԵՐՈՒՆ

Կը խնդրենք արտասահմանի մեր այն բաժանորդներէն, որոնք ցարդ չեն ղրկած իրենց բաժնեգինը, բարի ըլլալ մեզի փութացնելու զայն՝ դիւրացնելու համար մեր գործը։ Չէք կամ մանտա-փոստ գրել «Journal TCHAHAKIR» անունին եւ ուղարկել փոստարկղ թիւ 2111, Գահիրէ, ԱՄՀ։

ՎԱՐՉՈՒԹԻՒՆ «ՋԱՀԱԿԻՐ»Ի

BOAC offers
SPECIAL EMIGRANT FARES
to
CANADA
by
& ROLLS-ROYCE 707
and
AIR CANADA D.C. 8

MONTREAL L.E. 140.150 m/ms. TORONTO L.E. 149.450 m/ms.

Travel Problems? Forget them Leave it all to BOAC From getting you to the aircraft on time, to looking after children etc., BOAC takes care of you. Daytime or night-time relax in the most comfortable Economy Seat in the VC10 or in the comfort of Rolls-Royce and D.C. 8 Jetliners.

Effective from 15 th. October 1966

FREE BAGGAGE 30 KGS.

Ask for details of BOAC's new low emigrant fares at your BOAC authorised travel agent, or at the BOAC booking offices: Cairo: 1, Sharia el Bustan Tel. 714417 Alexandria: 15, Midan Saad Zaghloul Tel. 36668

BOAC WITH AIR INDIA, AIR CANADA, E.A.A. AND QANTAS

01048

